Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 5 ՄԱՐՏ 1952

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.—*Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78*

# ԳԱՐՆԱՆԱՑԱՆԸ ԵՎ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

*Գարնանացանի մասսայական աշխատանքներն սկսելուն օրեր են մնացել։ Տեղ-տեղ արդեն ցանվել են առաջին հեկտարները։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսային աշխատավորությունը վերջին նախապատրաստությունն է տեսնում գարնան դաշտային աշխատանքներին կազմ ու պատրաստ դիմավորելու համար։*

*Գարնանացանը գյուղատնտեսական աշխատանքներում համարվում է այն վճռական օղակներից մեկը, որի առավել լավ կազմակերպումից է կախված կայուն ու բարձր բերք ստանալու համար մղվող պայքարի հաջողությունը։*

*Ահա թե ինչու ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները, գյուղատնտեսական օրգանները, ՄՏ կայանները, կոլտնտեսային ողջ աշխատավորությունը չթուլացող թափով նախապատրաստվում են գարնանացանին, նրանք ձգտում են 1952 թվականը դարձնել առատ բերքի տարի։*

1951 թվականին գյուղատնտեսության վերելքի ասպարեզում ռեսպուբլիկայի կոլտնտեսականների ձեռք բերած հաջողությունները ու կոլտնտեսությունների նյութա-տեխնիկական բազայի անընդհատ աճը՝ անհրաժեշտ պայմաններ են ստեղծել ընթացիկ տարվա գարնանացանն ավելի կազմակերպված անցկացնելու և ապահովելու գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բարձր բերքատվությունը։

Այժմ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններից շատերը պատրաստ են գարնանացանին՝ առանձնացված, զտված և կոնդիցիային համապատասխան է դարձված անհրաժեշտ քանակությամբ սերմացու, ավարտված է գյուղատնտեսական գործիքների նորոգումը, կատարվում է հանքային և տեղական պարարտանյութերը դաշտ փոխադրելու պլանը։

Մեքենատրակտորային կայանների մեծ մասը նույնպես ավարտել է տրակտորների ու գյուղատնտեսական մեքենաների վերանորոգումը և լրիվին պատրաստ է առաջիկա գարնան դաշտային աշխատանքներին։

Սակայն պետք է ասել, որ կան կոլտնտեսություններ, որոնք դեռևս ետ են մնում գարնանացանին նախապատրաստվելու գոր-



ծում։ Այդ տեսակետից դրությունը հատկապես անբավարար է Ազիզբեկովի, Վեդիի, Բասարգեչարի, Կրասնոսելսկի շրջանների առանձին կոլտնտեսություններում, որտեղ մինչև այժմ էլ ձգձգվում է սերմացուի առանձնացումն ու զտումը։ Վերոհիշյալ շրջանների կոլտնտեսությունների մեծ մասում սերմազտիչները բավարար չափով գործի չդնելու հետևանքով խիստ դանդաղ է ընթանում սերմի զտումը։

Առանձին շրջանների պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգաններ, ինչպես նաև կոլտնտեսությունների ղեկավարներ միջոցներ ձեռք չեն առնում ոչ կոնդիցիոն սերմացուն բարձրորակ, սորտային սերմացուի հետ փոխանակելու համար։

Շրջանային պարտիական ու սովետական որոշ կազմակերպություններ և կոլտնտեսություններ անուշադրության են թողել ագրոտեխնիկական այնպիսի միջոցառում, ինչպիսին է դաշտերի պարարտացումը։ Բավական է ասել, որ Աղինի, Ազիզբեկովի, Կոտայքի, Թալինի, Մարտունու շրջաններում տեղական պարարտանյութը դաշտ փոխադրելու առաջադրանքը մինչև հիմա կատարված է հազիվ 2—10 տոկոսով։

Գարնան դաշտային մասսայական աշխա-

տանքներն սկսելուն կարճ ժամանակ է մնացել։ Շրջանային ու օկրուգային պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգանները պետք է ուժեղացնեն իրենց օգնությունն ու ղեկավարությունը կոլտնտեսություններին՝ գարնանացանին լրիվին նախապատրաստված դիմավորելու և անցկացնելու համար։ Այդ նպատակով անհրաժեշտ է, որ կոլտնտեսությունների վարչությունները և սկզբնական կազմակերպություններն առաջին հերթին մտահոգվեն բարձրորակ, տեսակավոր սերմեր ձեռք բերելու, ինչպես նաև վատորակ սերմացուն կոնդիցիոն սերմացուի հետ փոխանակելու մասին։ Դրա հետ միասին պետք է լրացնել կարտոֆիլի, բանջարանոցային կուլտուրաների, խոտաբույսերի, և արմատապտուղների սերմերի պակասը։ Կոլտնտեսությունները միաժամանակ պետք է ուժեղ աշխատանք կատարեն ծխախոտի և բանջարանոցային կուլտուրաների առողջ ու փարթամ սածիլներ աճեցնելու ուղղությամբ։

Հարկավոր է առանձնահատուկ ուշադրություն դարձնել հացահատիկի սերմացուի զտման վրա։ Այդ աշխատանքը պետք է կազմակերպել այնպես, որ առաջիկա մի քանի օրում գարնանացանի ամբողջ սերմացուն հասցվի կոնդիցիայի։



Բերքատվության բարձրացումը խոշոր չափով կախված է նաև դաշտերը տեղական և հանքային պարարտանյութերով պարարտացնելու պլանների անթերի կատարումից։ Ուստի, անհրաժեշտ է լայնորեն օգտագործել կոլտնտեսություններում եղած հնարավորությունները և մինչև ցանքը ամբողջ պարարտանյութը փոխադրել դաշտ։

Այս տարի Հայաստանի կոլտնտեսությունները և մեքենա-տրակտորային կայանները զգալի չափով ընդարձակելու են վարելահողերի տարածությունները։ Ցորենի ցանքերի տարածության հետագա ընդարձակումն ապահովելու համար, անհրաժեշտ է այժմյանից լայն նախապատրաստական աշխատանքներ ծավալել։ Ամենից առաջ պետք է ձեռնամուխ լինել դաշտերից քարերը հավաքելու և փոխադրելու գործին, այն հաշվով, որ նոր հողերի հերկումն ամենուրեք ավարտվի սահմանված ժամկետներում։

Գարնանացանը հաջող նախապատրաստելու և անցկացնելու, 1952 թվականին գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բարձր բերքի ստացումն ապահովելու գործում մեծ անելիքներ ունեն գյուղական ագիտատորները։

Ագիտատորներն իրենց զրույցների ժամա-

նակ պետք է կոլտնտեսականների ուշադրությունը կենտրոնացնեն գարնանացանի նախապատրաստական աշխատանքների գործում եղած թերությունների ամենաարագ կերպով վերացնելու հարցերի վրա։ Ագիտատորների անցկացրած զրույցներն ու զեկուցումները պետք է նպաստեն կոլտնտեսականների սոցիալիստական գիտակցության բարձրացմանը, ելնեն այն կոնկրետ ու գործնական խնդիրներից, որոնք այժմ դրվում են յուրաքանչյուր կոլտնտեսության, բրիգադի և օղակի առաջ։

Կոլտնտեսային մասսաների մեջ տարվող քաղաքական-մասսայական աշխատանքը տնտեսական հաջողությունների հիմքն է։ Այդ տեսանկյունից էլ սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման համար անհրաժեշտ է, որ պարտիական կազմակերպությունները սիստեմատիկաբար քաղաքական աշխատանք տանեն մասսաների մեջ։

«Ճիշտ կազմակերպված մասսայական-քաղաքական աշխատանքը,—գրում է «Պրավդան»,— կնպաստի գարնանացանի հաջող անցկացմանը, սոցիալիստական մրցության լայն ծավալմանը, աշխատանքային կարգապահության ամրապնդմանը, կոլտնտեսա-



կանների և ՄՏ կայանների աշխատողների աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, տեխնիկայի առավել լիակատար օգտագործմանը»։

Գյուղում տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքի ելակետը եղել է և մնում է սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման մասին պարտիայի ու կառավարության որոշումների պարզաբանումը։ Գարնանացանի ընթացքում ագիտատորները պետք է լայնորեն մասսայականացնեն այդ որոշումները և նրանց անշեղ կենսագործման համար մոբիլիզացնեն մասսաներին։

Դաշտում աշխատողների շրջանում քաղաքական աշխատանքի հաջողությունը սկզբից և եթ ապահովելու համար անհրաժեշտ է, որ պարտիական կազմակերպություններն այժմյանից ընտրեն և տեղաբաշխեն ագիտատորներին։ Ըստ որում՝ ագիտացիոն աշխատանքի ներգրավեն կոլտնտեսության ղեկավար աշխատողներին, արտադրության առաջավորներին, մեխանիզատորներին, ինտելիգենցիային։

Գարնանացանի աշխատանքների հենց սկզբից պարտիական կազմակերպությունները պետք է ապահովեն դաշտում աշխատողների անհատական ու կոլեկտիվ սոցիա-

լիստական մրցությունը, այն հաշվով, որպեսզի ոչ ոք դուրս չմնա մրցությունից։

Աշխատունակ ամբողջ բնակչությանը դաշտային աշխատանքներին մասնակից դարձնելու նպատակով, սկզբնական պարտիական կազմակերպությունները ագիտատորների միջոցով պետք է կոլտնտեսականների հետ զրույցներ անցկացնեն աշխատանքային կարգապահության նշանակության մասին, հանգամանորեն բացատրեն գյուղատնտեսական արտելի օրինակելի կանոնադրությամբ սահմանված յուրաքանչյուր կոլտնտեսականի պարտականությունները։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության ընդհանուր վերելքի համար կարևոր նշանակություն ունի ագրոզոոտեխնիկական գիտելիքների տարածումն ու արմատավորումը։ Ագիտացիոն աշխատանքի ներգրավելով գյուղատնտեսության մասնագետներին, պարտիական կազմակերպություններն առաջին հերթին նրանց միջոցով կոլտնտեսությունների և սովխոզների աշխատավորների գիտակցությանը պետք է հասցնեն սովետական առաջավոր ագրոբիոլոգիայի նվաճումները, արմատավորեն առաջավոր մարդկանց մեթոդները։

Չափազանց կարևոր է Սոցիալիստական



Աշխատանքի Հերոսների փորձի մասսայականացումն ու արմատավորումը։ Նախօրոք լավ ուսումնասիրելով գյուղատնտեսության առաջավորների աշխատանքի մեթոդները, անհրաժեշտ է, որպեսզի ագիտատորներն այդ մեթոդների մասսայականացման ժամանակ թվերով ու փաստերով ունկնդիրներին համոզեն առաջավորների գործադրած աշխատանքի ձևերի առավելությունները և մասսայական տրամադրություն ստեղծեն նրանց օրինակին հետևելու։ Գարնանացանի ընթացքում կոլտնտեսություններում ու սովխոզներում հանդես կգան բարձր բերքի նոր վարպետներ, որոնց խրախուսումը, աշխատանքի փորձի մասսայականացումը ագիտատորների ուշադրության կենտրոնում պետք է գտնվի։

Պարտիական կազմակերպությունները և ագիտատորները պետք է դաշտում աշխատողներին ապահովեն գրքերով ու թերթերով, կազմակերպեն բարձրաձայն ընթերցանություններ, լույս ընծայեն պատի թերթեր և խլյիշովկաներ։

Հարկավոր է կոլտնտեսականներին, սովխոզների և ՄՏ կայանների աշխատողներին սիստեմատիկաբար տեղյակ պահել կոմունիզմի կառուցման հաջողություններին, սովե-

տական մարդկանց աշխատանքային սխրագործություններին, Սովետական Միության կողմից գլխավորվող խաղաղության ու դեմոկրատիայի լագերի հաջողություններին։ Աշխատավորները ագիտատորների միջոցով պետք է տեղյակ լինեն ամերիկյան ագրեսիվ քաղաքականության դեմ աշխարհի ժողովուրդների օրավուր աճող դժգոհությանն ու դիմադրությանը, գաղութային և կախյալ երկրների ժողովուրդների պայքարին։

Պարտիական կազմակերպությունները պետք է ուժեղացնեն ագիտատորներին ցույց տրվող օգնությունը։ Հարկավոր է հաճախակի հրավիրել սեմինար պարապմունքներ և մեթոդական անհրաժեշտ օգնություն ցույց տալ նրանց։

Գարնանացանը բարձր որակով ու սեղմ ժամկետում ավարտելու վճռական պայմանը հանդիսանում է աշխատավորության շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքների հաջող կազմակերպումը։ Այդ տեսակետից էլ պարտիական կազմակերպությունները պետք է մոբիլիզացնեն աշխատավորներին, գարնանացանը հաջողությամբ ավարտելու համար։

Ա. ԱՅՐՈՒՄՅԱՆ

---

## ՎԵՐԱՑՆԵԼ ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԹԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների քաղաքային, շրջանային կոնֆերանսներում, ինչպես նաև հաշվետու-ընտրական ժողովներում նշվեց, որ հաշվետու ժամանակաշրջանում հիմնականում բարելավվել է պարտիական կազմակերպությունների քաղաքական-մասսայական աշխատանքը բնակչության մեջ։

Պարտիական կոնֆերանսներում, հաշվետու-ընտրական ժողովներում ընդգծվեց այն իրողությունը, որ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններն անդուլ կերպով աշխատել են սովետական մարդկանց կոմունիստական դաստիարակության ուղղությամբ, այդ շնորհակալ նպատակին ենթարկելով պարտիական պրոպագանդան և քաղաքական ագիտացիան։

Կենսագործելով ընկեր Ստալինի ցուցումները, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները բոլշևիկյան ագիտացիան ամբողջովին ուղղել են սովետական մարդ-

կանց քաղաքական դաստիարակության, մասսաների հետ պարտիայի կապերն է՛լ ավելի ամրապնդելու նպատակին։ Քաղաքական ագիտացիան ի սպաս է դրվել աշխատավորական ամենալայն խավերին մեր պարտիայի քաղաքականությունը պարզաբանելու, պարտիայի կոչերը կենսագործելու, պարտիայի ու կառավարության որոշումների կատարման համար մասսաներին մոբիլիզացնելու նպատակին։

Հաշվետու ժամանակաշրջանում ծավալված ագիտացիոն-մասսայական աշխատանքի շնորհիվ հաջողությամբ կենսագործվեցին մեր ռեսպուբլիկայի առջև դրված խնդիրները։ 1951 թվականին բուռն վերելք ապրեց Սովետական Հայաստանի էկոնոմիկան։ Նշանակալից հաջողություններ ձեռք բերվեցին կուլտուրայի, արվեստի զարգացման, ինչպես նաև աշխատավորության կենսամակարդակի է՛լ ավելի բարձրացման ուղղությամբ։

Սակայն, քաղաքական-մասսայական աշխատանքի շնորհիվ էկոնոմիկայի և այլ բնագավառներում ունեցած հաջողությունները չեն խոսում այն մասին, թե պարտիական կազմակերպությունների աշխատանքի այդ բնագավառում թերություններ չկան։ Ընդհակառակը, պարտիական կոնֆե-



րանսներում ու հաշվետու-ընտրական ժողովներում վեր հանվեցին քաղաքական-մասսայական աշխատանքի մի ամբողջ շարք թերություններ, առանձին կազմակերպությունների անբավարար աշխատանքը։

Հայտնի է, որ ամեն մի ընտրական կամպանիայի ժամանակ ագիտացիոն-մասսայական աշխատանքն առանձին թափ ու ծավալ է ստանում։ Այդ շրջանում կազմակերպվում են հարյուրավոր ագիտպունկտեր, հազարավոր ագիտատորներ սկսում են հաճախել բնակելի տները, թաղամասերը, ուր կազմակերպում են զրույցներ, բարձրաձայն ընթերցանություններ և այլն։ Ագիտացիոն-մասսայական աշխատանքն այդպես լայն ծավալ ստացավ ժողովրդական դատարանների ընտրությունների շրջանում։ Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների ճնշող մեծամասնությունն այժմ էլ նույն թափով շարունակում է հաջողությամբ սկսած գործը։ Դրա հետ միաժամանակ պարտիական կոնֆերանսներում և հաշվետու ժողովներում արդարացի քննադատության ենթարկվեցին մի շարք կազմակերպություններ, որոնք ժողովրդական դատարանների ընտ-

ռուլթյուններից հետո թուլացրել կամ բոլորովին չեն զբաղվում ազգաբնակչության շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքով։

ՀԿ(բ)Պ Երևանի կազմակերպության Միկոյանի ռայոնական կոնֆերանսում դելեգատ ընկ. Խ. Քերոբյանը իր ելույթում նշեց, որ ժողովրդական դատարանների ընտրություններից հետո Նոր Զեյթուն ավանում գրեթե ագիտացիոն աշխատանք չի կատարվում։ Այստեղ պարտիական կազմակերպության ղեկավարները մոռացել ու չեն օգնում ագիտատորներին, որի պատճառով նրանց մեծ մասը անգործության է մատնվել։ Ավանի բնակիչները հետաքրքրվում են մեր մեծ Միության մեջ կատարվող աշխատանքային սխրագործություններով, միջազգային դրությամբ. նրանք ագիտատորներից սպասում են իրենց հետաքրքրող հարցերի պատասխանները, սակայն ագիտատորները բոլորովին էլ չեն անհանգստանում բնակչության հետաքրքրությունը բավարարելու մասին։

Նոր Բայազետի շրջկենտրոնի, Ջանգիբասարի շրջանի Սարվանլար գյուղի կոլտնտեսությունների պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում բացահայտվեցին ագիտացիոն աշխա-



տանքի լուրջ թերություններ։ Ելույթ ունեցող ընկերները նշում էին, որ կոլտնտեսականների համար շատ քիչ զրույցներ են կազմակերպվում, հազվադեպ անցկացվող ագիտացիոն պարապմունքներն անհետաքրքիր են եղել, պարտիական կազմակերպությունները քաղաքական-մասսայական աշխատանքի մեջ չեն ներգրավել գյուղական ինտելիգենցիային։

Կրասնոսելսկի շրջանային, ինչպես նաև Երևանի երկաթուղային կայարանի պարտիական կոնֆերանսներում դելեգատներն իրենց ելույթներում խիստ քննադատության ենթարկեցին մի շարք պարտիական կազմակերպությունների, որոնք չեն ղեկավարում ագիտացիոն աշխատանքը, պայմաններ չեն ստեղծում ագիտատորների նորմալ աշխատանքի համար։ Երևանի երկաթուղային կայարանի ձեռնարկություններում եղած կարմիր անկյունները չունեն անհրաժեշտ կահավորում, ապահովված չեն գրականությամբ, գիշերային հերթափոխություններում ագիտատորները դեպքից-դեպք են հանդիպում իրենց ունկնդիրների հետ։

Պարտիական կազմակերպություններն ու նրանց բյուրոները ագիտացիոն աշխատանքի մեջ պետք է ներգրավեն ձեռնարկության,

հիմնարկության, կոլտնտեսության բանի-
մաց, գործնական աշխատանքում իրենց ար-
դարացրած աշխատողներին, այնպիսի մարդ-
կանց, որոնք իրենց գիտելիքներով կբավա-
րարեն սովետական մարդկանց օրավուր
աճող պահանջները, իրենց անձնական օրի-
նակով կմոբիլիզացնեն շրջապատի մարդ-
կանց՝ կոլեկտիվի առջև դրված խնդիրներն
արագորեն կենսագործելու համար։ Ագիտա-
ցիոն աշխատանքների հաջողությունը կախ-
ված է նաև այն բանից, թե որքանով պար-
տիական կազմակերպությունները քաղաքա-
կան-մասսայական աշխատանքի մեջ կընդ-
գրկեն ինտելիգենցիային։

Պարտիական կոնֆերանսներում և հաշվե-
տու-ընտրական ժողովներում բացահայտ-
ված ագիտացիոն աշխատանքների թերու-
թյունները արագորեն վերացնելու համար,
անհրաժեշտ է իրական օգնություն կազմա-
կերպել ագիտատորներին։ Ագիտկոլեկտիվ-
ների նիստերը պետք է վերածվեն ագիտա-
ցիոն աշխատանքի ծրագրերը, պլանները
լայնորեն քննարկելու, առաջավոր ագիտա-
տորների փորձը մասսայականացնելու, մե-
թոդական օգնություն կազմակերպելու յու-
կական տրիբունի։ Ագիտկոլեկտիվում ագի-



տատորը պետք է ստանա իրեն և ունկնդիր-
ներին հետաքրքրող բոլոր հարցերի պատաս-
խանները։

Պարտիական կազմակերպություններն
իրենց ամենօրյա գործունեության մեջ միշտ
առաջնությունը պետք է տան մասսաների
մեջ տարվող քաղաքական աշխատանքին։
Ագիտատորների միջոցով նրանք պետք է
օգնեն աշխատավորներին ժամանակին տեղ-
յակ լինելու պարտիայի ու կառավարության
որոշումներին, մոբիլիզացնեն մասսաներին
կենսագործելու այդ որոշումները։

Կոնֆերանսներում, հաշվետու ժողովներում
արված առաջարկություններից ու քննադա-
տական դիտողություններից ելնելով, սկզբ-
նական պարտիական կազմակերպություննե-
րը պետք է վերանայեն իրենց աշխատանքը,
կազմակերպության բոլոր ուժերը ուղղեն
ագիտացիոն աշխատանքների հետագա բա-
րելավման մասին ընդունված որոշումների
կենսագործմանը։

Ն. ԶԱՐԳԱՐՅԱՆ

# ԱՆԱՍՆԱՊԱՀԱԿԱՆ ՖԵՐՄԱՅԻ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԸ

Կաթնաղբյուր գյուղի 17-րդ պարտհամագումարի անվան կոլտնտեսությունը Ստեփանավանի շրջանի անասնապահական առաջավոր կոլտնտեսություններից է։ Այստեղ անասնապահ կոլտնտեսականները հետևողականորեն կենսագործելով պարտիայի ու կառավարության ցուցումները, գործի վերածելով ՀԿ(բ)Պ 15-րդ համագումարի որոշումները, ձեռք են բերել լուրջ հաջողություններ։

Սեփական հոտի վերարտադրության հաշվին կոլտնտեսությունը ժամկետից շուտ կատարեց անասունների գլխաքանակն ավելացնելու եռամյա պլանը։ Կոլտնտեսականները բավարար աշխատանք կազմակերպեցին անասունների ցեղը ազնվացնելու ուղղությամբ, արժանանալով շրջանային կազմակերպությունների խրախուսանքին։ Կոլտնտեսությունում առանձնապես նշանակալից նվաճումների հասան կովաբուծական ֆերմայի աշխատողները, որոնք յուրաքանչյուր



ֆուրաժային կովից ստացան 2.260 լիտր կաթ, այսինքն զգալի չափով ավելի, քան նախատեսված էր։

Անասունների գլխաքանակի ավելացման, մթերատվության բարձրացման գործում Կաթնաղբյուր գյուղի կոլտնտեսության հաջողությունները արդյունք են նաև պարտիական կազմակերպության կողմից կոլտնտեսականների շրջանում ծավալած քաղաքական-մասսայական աշխատանքի։

Կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը, իր լավագույն օգնականների՝ ագիտատորների միջոցով, անասնապահական ֆերմայում արմատավորում է սոցիալիստական անասնապահության զարգացման բնագավառում սովետական գիտության ձեռք բերած նվաճումները։ Կոլտնտեսությունում ագիտատորները լայնորեն տարածում են առաջավոր անասնապահների փորձը, կազմակերպում սոցիալիստական մրցություն, օգնում են մնացողներին՝ առաջավորներին հասնելու համար, խրախուսում լավագույն ցուցանիշներ ունեցողներին։ Կազմակերպությունը ագիտատորների միջոցով գլխավորում է կոլտնտեսականների աշխատանքային խանդավառությունը, մոբիլիզացնում նրանց՝ անասնապահության զար-

գացման բնագավառում նոր, ավելի բարձր ցուցանիշներ ձեռք բերելու։

Քննության առնելով անասնաբուծության զարգացման ամենապատասխանատու շրջանը՝ ծնի կամպանիան կազմակերպված անցկացնելու հարցը, պարտիական կազմակերպությունը ֆերմաներում աշխատանքի ուղարկեց անասնապահության գործում փորձառու կոմունիստներին։ Վերանայելով ագիտատորների կազմը, պարտիական կազմակերպությունը ագիտացիոն աշխատանքի առաջ քաշեց արտադրության մեջ առաջավոր, բանիմաց կոլտնտեսականների։

Այնուհետև, կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը սահմանեց ամենօրյա օգնություն ու ղեկավարություն ագիտատորներին։ Բյուրոյի նիստերում և պարտիական ժողովներում հաճախակի քննարկելով ագիտացիոն աշխատանքները, բարելավելու հարցերը, պարտիական կազմակերպությունը հաստատում է ագիտացիոն աշխատանքի թեմատիկ պլաններն ու ծրագրերը, ուղղություն ու տոն է տալիս ագիտկոլեկտիվի աշխատանքներին։

Գործի վերածելով պարտիական կազմակերպության որոշումները, ագիտկոլեկտիվը իր նիստերը դարձրել է ագիտացիոն աշխա-



տանքի փորձի փոխանակման տրիբուն։ Այստեղ հաճախ հանդես են գալիս ագիտատորները, քննարկման ներկայացնում նախապատրաստած զրույցները, ստանում մեթոդական օգնություն, իրենց և ունկնդիրներին հետաքրքրող հարցերի պատասխանները։

Կոլտնտեսականների շրջանում քաղաքական-մասսայական աշխատանք ծավալելու գործին պարտիական կազմակերպությունը միշտ էլ առաջնակարգ նշանակություն է տվել և տալիս է։ Ագիտատորներն իրենց շնորհակալ գործին մոտենում են մեծ պատասխանատվությամբ, հանդես բերելով ջանասիրություն, դրա համար էլ ագիտատորները կոլտնտեսությունում մեծ հեղինակություն են վայելում։ Ագիտատորներ Մ. Ավոյանին, Հ. Մելոյանին, Մ. Չալաբյանին և ուրիշներին հարգանքով են վերաբերվում կոլտնտեսականները, խոսում նրանց պարտաճանաչության, բանիմացության մասին, կոլտնտեսականներին հուզող հարցերին բավարարելու համար նրանց ցուցաբերած հոգատարության մասին։

Անընդհատ հարստացնելով իրենց գիտելիքները, կատարելագործելով ագիտացիոն աշխատանքի վարպետությունը, կովաբուծական ֆերմայի ագիտատորները կուտակել

են ուսանելի փորձ։ Թե որքան խելացի են կազմակերպում նրանք իրենց աշխատանքը, երևում է ագիտատոր ընկ. Մ. Ավոյանի վերջերս ֆերմայում անցկացրած՝ «Առաջավորների փորձը և կովերի կաթնատվությունը բարձրացնելու ուղիները» թեմայով զրույցից։

Ագիտատոր Մ. Ավոյանը զրույցի թեման ընտրելուց հետո սկսեց այն խնամքով նախապատրաստել։ Նա կրկին կարդաց անասնաբուծության գլխաքանակի ավելացման և մթերատվության բարձրացման հարցերին վերաբերող որոշումները, այդ որոշումների կենսագործման մասին եղած թվերն ու փաստերը իր մոտ գրանցելուց հետո ուսումնասիրեց Սովետական Միության առաջավոր անասնապահական ֆերմաների աշխատանքի փորձը։ Դրանից հետո ագիտատոր Մ. Ավոյանը զրույց ունեցավ կոլտնտեսության անվանի կթվորուհի, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Պոլկա Սաֆթյանի հետ։ Միաժամանակ ագիտատորն ուսումնասիրեց նրա աշխատանքի մեթոդները, և նոր միայն ներկայացավ պարապմունքի։

Պարապմունքի սկզբում ագիտատորը կոլտնտեսականներին տեղյակ դարձրեց այն նվաճումներին, որ ձեռք են բերել Սովետական Միության աշխատավորները պար-



տիայի ու կառավարության որոշումները փորձի վերածելու շնորհիվ։

— Այս որոշումների անշեղ կենսագործումով,— ասում է ագիտատորը,— դերակատարվեց անասնաբուծության զարգացման եռամյա պլանը։ Մեր ազգաբնակչությունը ստացավ ավելի շատ կաթ, յուղ, պանիր և այլ մթերքներ։

Այնուհետև Մ. Ավոյանը նշում է, որ Կաթնաղբյուր գյուղի կոլտնտեսականները հետևվելով Սովետական Միության առաջավոր անասնապահների օրինակին, լուրջ հաջողություններ են ձեռք բերել անասնաբուծության զարգացման բնագավառում։ Առանձնապես նշանակալից հաջողությունների է հասել Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ, անվանի կթվորուհի Պոլկա Սաֆթյանը։

— Անվանի կթվորուհի Պոլկա Սաֆթյանը,— ասում է ագիտատորը,— ոչ միայն մեր կոլտնտեսության, այլև ռեսպուբլիկայի առաջավոր անասնապահներից է։ Նա անցյալ տարի իր խնամքին հանձնված յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացավ 3.010 լիտր կաթ, անկորուստ պահպանեց բոլոր հորթերը։

Այնուհետև, ագիտատորն ունկնդիրներին

ծանոթացնում է Պ. Սաֆթալյանի աշխատան-
քի մեթոդների հետ։
— Ուսանելին այն է,— ասում է ագիտա-
տորը,— որ անվանի կթվորուհին կիթը սկսե-
լուց առաջ կովի կուրծը լվանում է գոլ ջրով
ու շփում, որով ակտիվացնում է կաթնագեղ-
ձերի գործունեությունը և դրանով իսկ բարձ-
րացնում կաթնատվությունը։ Բացի այդ,
Սաֆթալյանը կովերին կթում է օրական
3—4 անգամ, օրվա միևնույն ժամերին։

Զրույցի ընթացքում ագիտատորը պարզա-
բանում է նաև կոլտնտեսության առաջավոր
մյուս անասնապահների մեթոդները։ Նա գո-
վեստով է խոսում Հաբեթ Մելոյանի մասին,
որը հոգատար վերաբերմունք է ցույց տալիս
իր խնամած մատղաշների նկատմամբ, ազ-
նըվաբար և օրինակելիորեն է կատարում
իր պարտականությունները։ Հ. Մելոյանը
երկար տարիներ է ինչ աշխատում է ֆերմա-
յում և մինչև հիմա մատղաշի ոչ մի կորուստ
չի ունեցել։

Վերջում Մ. Ավոյանը կոչ է անում բոլոր
անասնապահներին հետևել առաջավորնե-
րին, ուժեղացնել խնամքը յուրաքանչյուր ա-
նասունի նկատմամբ, ավելացնել անասնա-
բուծության մթերատվությունը։



Կաթնաղբյուր գյուղի կոլտնտեսականնե-
րի մեջ քաղաքական-մասսայական օրինա-
կելի աշխատանք են կատարում նաև ագի-
տատորներ Մ. Ջալաբյանը, Մ. Մանուկ-
յանը, Պ. Մարդոյանը և ուրիշներ։
Ագիտատորները անասնապահ կոլտնտե-
սականների շրջանում գլխավորում են սո-
ցիալիստական մրցությունը։ Նրանք յուրա-
քանչյուր շաբաթ ամփոփելով մրցության ար-
դյունքները, քննարկում են դրանք պարապ-
մունքների ժամին, կազմակերպում առաջա-
վորների խրախուսումը, օգնում ետ մնացող-
ներին։
Բոլոր ֆերմաներում կանոնավոր կերպով
լույս են տեսնում խլյիշովկաներ, ուր լուսա-
բանվում է անասնապահների աշխատանքը։
Յուրաքանչյուր անասնապահական ֆերմա
ունի իր կարմիր անկյունը, որտեղ անասնա-
պահները կարդում են իրենց ցանկացած
գրքերը և օրվա թերթերը։ Ֆերմաներում
օրինակելիորեն է կազմակերպված նաև
ցուցադրական ագիտացիան։ Լուսավոր գո-
մերում փակցված լոզունգներն ու պլակատ-
ները անասնապահ կոլտնտեսականներին
կոչ են անում անկորուստ անցկացնել անա-
սունների ծինը, ավելի շատ անասնապահա-
կան մթերքներ տալ հարազատ Հայրենիքին։

*Անասնապահական ֆերմաներում կատարվող քաղաքական աշխատանքը մոբիլիզացրել է Կաթնաղբյուր գյուղի կոլտնտեսության անասնապահներին, նրանք աշխատում են եռանդով, որի շնորհիվ կովաբուծական ֆերման մինչև հիմա անասունի և մատղաշի ոչ մի կորուստ չի ունեցել, զգալի չափով բարձրացել է կաթնատվությունը։*

*Կաթնաղբյուր գյուղի կոլտնտեսության ֆերմաների ագիտատորները, կուտակելով հարուստ փորձ, գնալով ավելի լայնորեն են ծավալում ագիտացիոն-մասսայական աշխատանքը՝ հանրային անասնաբուծության զարգացման գործում նորանոր հաջողություններ ձեռք բերելու համար։*

*Գ. ՀՈՒՆԱՆՅԱՆ*

ՀԿ(բ)Պ Ստեփանավանի շրջկոմի
պրոպագանդայի և ագիտացիայի
բաժնի վարիչ

---

ՄԵՐ ՀԱՅՐԵՆԻՔԻ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՕՋԱԽՆԵՐԸ

---

# ՄՈՍԿՎԱՅԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԸ

## (Թվեր և փաստեր)

*1948 թվականին, ընկեր Ստալինի նախաձեռնությամբ, ՍՍՌՄ Մինիստրների Սովետը որոշում ընդունեց Մոսկվայի Լենինյան Բարձունքներ կոչվող վայրում Լոմոնոսովի անվան Պետական համալսարանի նոր շենք կառուցելու մասին։*

*Մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայի համալսարանի նոր շենքի շինարարությունը պատկանում է Ստալինյան դարաշրջանի վիթխարի կառուցումների շարքին։ Գիտության այդ մեծ պալատում սովետական ուսանողների, պրոֆեսորա-դասախոսական կազմի ուսումնական և գիտական աշխատանքների, ինչպես նաև նրանց կուլտուրական, կենցաղային կարիքների համար ստեղծվելու են միանգամայն բավարար, մինչ այժմ չտեսնված լավ պայմաններ։*

*Մոսկվայի Լոմոնոսովի անվան Պետական*

համալսարանի 26 հարկանի նոր շենքի, ինչ-
պես նաև նրան կից շենքերի կառուցումը
արդյունք է այն ջերմ հոգատարության, որ
ցուցաբերում են բոլշևիկների պարտիան, Սո-
վետական կառավարությունը և գիտության
կորիֆեյ ընկեր Ստալինը մեր երկրի երիտա-
սարդության նկատմամբ։

✪ Հայտնի է, որ Սովետական Միությու-
նում կան 880 բարձրագույն ուսումնական
հաստատություններ, որտեղ սովորում են ա-
վելի շատ ուսանողներ, քան Եվրոպայի և Ա-
սիայի մնացած բոլոր երկրներում միասին
վերցրած։

✪ Մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվա-
յում սովորում են ավելի շատ ուսանողներ,
քան Անգլիայում կամ Ֆրանսիայում՝ առան-
ձին-առանձին վերցրած։

✪ Այս տարի մեր երկրի բարձրագույն ու-
սումնական հաստատություններն ավարտե-
լու են 200 հազար երիտասարդ մասնագետ-
ներ։ Միայն Մոսկվայում բարձրագույն ու-
սումնական հաստատությունները կտան 30
հազար շրջանավարտներ։

Որպեսզի պատկերացնենք Մոսկվայի Պե-
տական համալսարանի շենքի շինարարա-
կան աշխատանքների թափն ու ծավալը և թե



ինչպիսին է լինելու այն՝ կադրերի այդ
դարբնոցը, դիմենք թվերի ու փաստերի։

✪ 1949 թվականի ապրիլի 12-ին Մոսկվա-
յի Պետական համալսարանի նոր շենքի հիմ-
քում, հանդիսավոր իրադրության մեջ, դրվեց
առաջին քարը։

✪ Համալսարանի շինարարության մասշ-
տաբի մասին պատկերացում կազմելու հա-
մար բավական է ասել, որ երկրի բոլոր ծայ-
րերից ամեն օր այնտեղ են փոխադրվում մոտ
200 վագոն զանազան տեսակի շինանյութեր
և պատրաստի մասեր։ Շինարարության վայ-
րում անց են կացված երկաթուղային գծեր,
որոնց երկարությունը այժմ հասնում է 40
կիլոմետրի։ Այստեղ արդեն հայտնի է դար-
ձել «Լենինյան Բարձունքներ» նոր երկաթու-
ղային կայարանը։

✪ Շինարարության հրապարակում կա-
ռուցվել են բազմաթիվ նոր խճուղիներ և ճա-
նապարհներ, որոնցով մեկ հերթափոխում
անցնում են ավելի քան 1.000 ավտոմեքենա-
ներ։

✪ Ամեն օր Պետական համալսարանի շեն-
քի կառուցման համար պատրաստվում է 35
վագոն շաղախ։ Շինարարության կարիքների
համար օրական օգտագործվում է 65.000
կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

✪ Նորակառույց շենքում դրվել է տասնյակ հազար տոննա կշռող պողպատե հիմնակըմախք, միայն կենտրոնական շենքի մետաղյա հիմնակմախքն տևի 38 հազար տոննա քաշ։ Շարվել է 100 միլիոնից ավելի աղյուս, լցվել է ավելի քան 250 հազար խորանարդ մետր բետոն։

✪ Շինարարությունն ունի երկաթբետոնե կառուցվածքների գործարան և ջրմուղ։ Վերջինիս երկարությունը հասնում է 40 կիլոմետրի։

✪ Շինարարությունում գործում է ուսումնական կոմբինատ, որտեղ պատրաստվում ու որակավորվում են հարյուրավոր կառուցող բանվորներ։ Երկու տարվա ընթացքում ուսումնական կոմբինատն ավարտել են 6000-ից ավելի տարբեր մասնագիտությունների որակյալ կառուցողներ։

Համալսարանի շենքը կառուցող բանվորների թիվը հասնում է 20 հազարի։

✪ Համալսարանի նոր շենքը Լենինյան Բարձունքներում զբաղեցնում է 167 հեկտար տարածություն։

✪ Համալսարանի գլխավոր կորպուսի բարձրությունը հավասար է լինելու 238,5 մետրի. սա ավելի քան երկու անգամ բարձր



է Լենինգրադի Իսակովյան տաճարի բարձրությունից։

✪ Համալսարանի նոր շենքն ունենալու է 18 հազար պատուհան։ Եթե այդքան պատուհանը շարենք իրար կողքի, նրանք կունենան 15 կիլոմետր երկարություն։

✪ Համալսարանի շենքը օգտագործման հանձնելուց հետո, այնտեղ կաշխատի 108 լիֆտ. եթե դրանք դնենք մի ուղղահայաց գծի վրա, ապա նրանց ծայրը կհասնի Կազբեկի ստորոտից մինչև գագաթը։

✪ Համալսարանի շենքում տեղադրվող խողովակների ընդհանուր երկարությունը կազմելու է 2.400 կիլոմետր։ Այդ երկու անգամ ավելի է Մոսկվայից մինչև Ղրիմ տանող ճանապարհի երկարությունից։

✪ Շենքի կենտրոնական կորպուսին կից, հետևի մասում կառուցված են 6 հարկանի կորպուսներ։ Համալսարանի շրջապատում կառուցվելու են ավելի քան 20 այլ շենքեր։

✪ Համալսարանի շենքն ունենալու է 23 մեծ լսարան՝ յուրաքանչյուրը 150—600 մարդու համար։ Բացի դրանից, համալսարանն ունենալու է նաև 125 փոքր լսարան, մեկ հանդիսասրահ՝ 1.500 մարդու համար և ակումբ՝ իր ընդարձակ դահլիճով։

✪ Նոր համալսարանն ունենալու է մեծ գրադարան՝ մեկ միլիոն 200 հազար կտոր գրքի համար։ Բացի այդ, 120 ամբիոններ կունենան իրենց գրադարանները, յուրաքանչյուրը մոտ 1.000 կտոր գրքով։

✪ Եթե Մոսկվայի Լոմոնոսովի անվան համալսարանը իր հիմնադրման առաջին շրջանում (1755 թվականին) ունեցել է 2 լաբորատորիա, 1916 թվականին՝ 14, ներկայումս՝ 106, ապա համալսարանի նոր շենքը կունենա 700 լաբորատորիա։

✪ Համալսարանի բնակելի շենքերի ընդհանուր ծավալը կազմելու է մոտ 800 հազար խորանարդ մետր, որից 6 հազար սենյակ հատկացվելու է ուսանողներին և ասպիրանտներին, իսկ 200 բնակարան՝ պրոֆեսորա-դասախոսական կազմին։

✪ Ամեն մի ուսանող պետք է ունենա իր առանձին սենյակը՝ 8 քառակուսի մետր տարածությամբ, իսկ ասպիրանտը՝ 12 մետր։ Ուսանողի սենյակում կլինի մահճակալ, բազմոց, գրքերի պահարան, աշխատանքի սեղան, աթոռներ, պահարան՝ ամանեղենի և սպիտակեղենի համար, գորգ, կախարան և այլն։ Սենյակներում կդրվի ռադիո- բարձրախոս և հեռախոս։

✪ Համալսարանի տերիտորիայում մեծ հո-



ղամաս է հատկացված ուսումնական աստղադիտարանի համար, որտեղ դրվելու է հայրենական կոնստրուկցիայի ռեֆրակտոր, որը ամենախոշորն է լինելու ՍՍՌ Միության մեջ։

✪ Համալսարանի կենտրոնական մուտքի առջև պետք է կառուցվի ավազան՝ 4 շատրվաններով։ Այնտեղ կդրվեն նաև ռուս ականավոր գիտնականների կիսանդրիները, իսկ կենտրոնում պատվանդանի վրա կդրվի Մոսկվայի Համալսարանի հիմնադիր Լոմոնոսովի արձանը։

✪ Համալսարանի նոր շենքը տանող գլխավոր ծառուղու սկզբում կլինեն մի շարք քանդակներ։

✪ Համալսարանի նոր շենքի 18-րդ հարկի բարձունքում դրվելու է ոչ միայն մեր երկրում, այլև ամբողջ Եվրոպայում ամենամեծ ժամացույցը, որի րոպեները ցույց տվող սլաքի երկարությունը հավասար է լինելու 4 մետր 13 սանտիմետրի, իսկ ժամացույցի թվացույցի մակերեսը հավասար է լինելու մոտավորապես 60 քառակուսի մետրի։ Ժամացույցի ընդհանուր քաշը մետաղյա հիմնակմախքի հետ միասին կազմելու է 20 տոննա։ Սլաքների ներսում դրվելու են 40 էլեկտրական լամպեր։

# ՉԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Թվեր ու փաստեր)

Սովետական Միության և Չինաստանի ժողովուրդները, ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը փետրվարի 14-ին բերկրանքով նշեցին ՍՍՌՄ-ի և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի միջև բարեկամության, դաշինքի և փոխադարձ օգնության պատմական Պայմանագրի կնքման երկրորդ տարեդարձը։

Բնորոշելով այդ փաստաթղթի հսկայական նշանակությունը, «Պրավդան» նրա առաջին տարեդարձի կապակցությամբ գրել է.

«Բարեկամության, դաշինքի և փոխադարձ օգնության սովետա-չինական պայմանագիրը նոր դարաշրջան բաց արեց Չինաստանի և Սովետական Միության մեծ ժողովուրդների բարեկամական փոխադարձ հարաբերությունների զարգացման մեջ։ Նա դրեց նոր էտապի սկիզբը միջազգային հարաբերությունների զարգացման գործում, որովհետև



սովետա-չինական պայմանագիրը ՍՍՌՄ և Չինաստանի ժողովուրդների բարեկամությունը դարձրեց ամբողջ աշխարհում խաղաղությունն ամրապնդելու մի այնպիսի մեծ ու հզոր ուժ, որի հավասարը չկա և չի եղել մարդկության պատմության մեջ»։

***

Անցած տարում չինական ժողովուրդը կոմունիստական պարտիայի և նրա առաջնորդ Մաո Ցզե-դունի ղեկավարությամբ հսկայական հաջողություններ ձեռք բերեց նոր կյանքի կառուցման բոլոր ասպարեզներում։ 1951 թվականին չինական ժողովրդի ձեռք բերած ամենակարևոր նվաճումներից մեկն էր Տիբեթի խաղաղ ազատագրումը։ Այդ հաղթանակով ավարտվեց ամբողջ Չինաստանի ազատագրումը, բացառությամբ Տայվան կղզու, որը զավթել են ամերիկյան իմպերիալիստները։

Չինական ժողովուրդը հետևողականորեն պաշտպանելով խաղաղության գործը, վճռականորեն հանդես է գալիս ընդդեմ Հեռավոր Արևելքում տեղի ունեցող իմպերիալիստական ագրեսիայի։ Չինական ժողովրդական կամավորները, որոնք Կորեայի ժողովրդական բանակի հետ ուս-ուսի տված մարտն-

շում են թշնամու դեմ, կործանիչ հարվածներ են հասցնում ամերիկյան և այլ ագրեսորներին։

Խաղաղության Պակտ կնքելու Դիմումի տակ իրենց ստորագրություններն են դրել Չինաստանի ավելի քան 344 միլիոն աշխատավորներ։ Այդ թիվը վառ կերպով արտահայտում է չինական ժողովրդի խաղաղության կամքը։

***

Հենվելով Սովետական Միության ցույց տված եղբայրական օգնության վրա, օգտագործելով ՍՍՌՄ-ի ամենահարուստ փորձը, չինական ժողովուրդը նշանակալի հաջողություններ է ձեռք բերել իր ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման գործում։

Անցյալ տարի ռեսպուբլիկայի արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրությունը հիմնականում վերականգնվեց և հասցվեց այն ամենաբարձր մակարդակին, որ երբևէ եղել էր Չինաստանի պատմության ընթացքում։ Ժողովրդական տնտեսության մի քանի ճյուղերում այդ մակարդակը խոշոր չափով գերազանցվել է։



***

Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ծանր արդյունաբերության աճման տեմպերի մասին կարելի է գաղափար կազմել հետևյալ տվյալներից՝ անցած տարում չուգունի ձուլումը ավելացավ, 1950 թվականի համեմատությամբ, ավելի քան երկու անգամ, պողպատի արտադրությունը՝ 65 տոկոսով։

Չինաստանի մեքենաշինական գործարանները յուրացրին մի քանի հարյուր տեսակի արտադրանքների արտադրությունը։ Չինական արդյունաբերությունն առաջին անգամ սկսեց թողարկել ժամանակակից գերարագ մետաղամշակման դազգահներ, մետաղահատ մեքենաներ, ավտոմեքենաներ, ջուլհակագործական դազգահներ, տրակտորներ, զանազան գյուղատնտեսական մեքենաներ և այլն։

***

Լուրջ հաջողությունների են հասել Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի նաև թեթև արդյունաբերությունը և տրանսպորտը։ Այսպես, օրինակ՝ Արևելյան Չինաստանի պետական տեքստիլ ֆաբրիկաները 1951 թվականին արտադրանքի թողարկումն ավելացրին 13 տոկոսով։

Հիանալի են աշխատում չինական երկա-

Թուղայինները։ Մեկ ու կես-երկու տարում նրանք կարողացան վերականգնել երկաթուղային ճանապարհների ամբողջ ցանցը՝ 22.600 կիլոմետր երկարությամբ։ Շատ ճանապարհներ խիստ ավերվել և գրեթե ամբողջ տասը տարի անգործության էին մատնվել։ Հաջող է ընթանում նաև երկաթուղային նոր ճանապարհների կառուցումը։

***

Չինական գյուղը քաղաքական և արտադրական աննախընթաց վերելք է ապրում։ Հողային ռեֆորմն արդեն իրագործվել է ավելի քան 310 միլիոն գյուղական բնակչություն ընդգրկող տերիտորիայում։ Այս տարի այդ կարևորագույն դեմոկրատական ռեֆորմը կավարտվի ամբողջ երկրում, բացառությամբ այն շրջանների, որոնք բնակեցված են ազգային փոքրամասնություններով։ Ռեսպուբլիկայում իրագործվում են վիթխարի իրրիգացիոն աշխատանքներ, որոնցով զբաղված են միլիոնավոր աշխատավորներ։

Անցյալ աշնանը ստացվեց այնպիսի բարձր բերք, որ չէր եղել Չինաստանի պատմության ընթացքում։ Արևելյան Չինաստանում ստացված հացահատիկի բերքը 1950 թվականի բերքից ավելի էր համարյա 17 տոկոսով։ Երկրի բամբակի բերքը համարյա



18 տոկոսով գերազանցեց նախապատերազմյան մակարդակը։

Եթե Չինաստանը դեռ մոտիկ անցյալում հսկայական քանակությամբ հաց էր ներմուծում դրսից, ապա անցած տարում չինական ժողովուրդը իր պահանջները բավարարելուց բացի, կարողացավ մի քանի հարյուր հազար տոննա հացահատիկ ուղարկել Հնդկաստանի սովյալ բնակչությանը։

***

Արդյունաբերության և գյուղատնտեսության աճմանը համընթաց՝ բարձրանում է չինական ժողովրդի բարեկեցությունն ու կուլտուրան։ Դա արտահայտվում է առևտրի զարգացման, բնակչության գնողունակության բարձրացման մեջ։ Հյուսիս-Արևելյան Չինաստանի բնակիչների գնողունակությունը այս տարվա սկզբներին երկու անգամ բարձր էր, քան 1950 թվականին։

***

Չինաստանի կոմունիստական պարտիայի նախաձեռնությամբ ծավալված ինքնակրթության շարժումը ընդգրկել է ամբողջ երկիրը։ Երեկոյան դպրոցներում և անգրագիտության վերացման դասընթացներում սովորող քան-

վորների թիվը 1951 թվականին հասնում էր մեկ միլիոն 780 հազար մարդու։

Տարրական դպրոցներում սովորող երեխաների թիվը հասնում է 37 միլիոնի, այսինքն՝ 24 միլիոնով ավելի, քան 1950 թվականին։

Հիանալի հաջողությունների է հասել նոր Չինաստանի մամուլը։ 1950 թվականին ռեսպուբլիկայում հրատարակվել է համարյա 272 միլիոն օրինակ գիրք, իսկ 1951 թվականին՝ արդեն մոտ 500 միլիոն գիրք։

* * *

Չինական ժողովուրդը իր ջերմ շնորհակալությունն է հայտնում Սովետական Միությանը՝ անշահախնդիր օգնության համար։ Արտահայտելով միլիոնավոր չին աշխատավորների խոհերը, մեքենավար Վան Ցզիկույը ասել է. «Մեր ամեն մի նվաճումը մենք պարտական ենք Սովետական Միությանը և մեծ Ստալինին։ ՍՍՌՄ-ի ամենօրյա օգնությունը մենք տեսնում ենք տնտեսական շինարարության բոլոր բնագավառներում։ Չին-սովետական բարեկամությունը, որ մեծ հաղթանակներ ապահովեց մեզ համար, մեզ ոգեշնչում է աշխատանքային նորանոր սխրագործությունների»։



# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

I

## ՍՍՌՄ 1952 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

1. ՍՍՌՄ 1950 թվականի Պետական բյուջեի կատարման արդյունքները վառ կերպով ցույց են տալիս սոցիալիստական էկոնոմիկայի ու կուլտուրայի նոր, հզոր վերելքը, աշխատավորության կենսամակարդակի աննախընթաց աճը։

2. ՍՍՌՄ 1952 թվականի Պետական բյուջեն հանդիսանում է ժողովրդական տնտեսության հետագա բուռն զարգացման հիմքը։

3. ՍՍՌՄ 1952 թվականի Պետական բյուջեն հանդիսանում է սոցիալիստական արվեստի ու կուլտուրայի է՛լ ավելի զարգացման, աշխատավորության կենսամակարդակի է՛լ ավելի բարձրացման երաշխիքը։

4. Սովետական պետության միջոցների խնայողության համար ծավալված ամենօրյա պայքարը՝ Պետական բյուջեի կատարման կարևորագույն պայմանն է։

5. 1952 թվականի Պետական բյուջեն լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության վառ դրսևորումն է։

6. ՍՍՌՄ Պետական բյուջեն Սովետական Միության աշխատավորների խաղաղ, ստեղծագործական աշխատանքի արտացոլումն է, ի հակադրություն կապիտալիստական երկրների հակաժողովրդական, ռազմական ագրեսիվ բյուջեների։

7. 1952 թվականի պետական ֆինանսական պլանների կատարման համար պայքարելը՝ մեր երկրի բոլոր աշխատավորների հայրենասիրական պարտքն է։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ 1952 թվականի Պետական բյուջեի մասին ՍՍՌՄ Ֆինանսների մինիստր Ա. Գ. Զվերևի զեկուցումը ՍՍՌՄ Գերագույն Սովետի Երրորդ գումարման Երրորդ սեսիայում:

Օրենք՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Պետական բյուջեի մասին:

Լ. Պ. ԲԵՐԻԱ.— Զեկուցում Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում 1951 թվականի նոյեմբերի 6-ին:



II

# 1952 ԹՎԱԿԱՆԻ ԳԱՐՆԱՆԱՑԱՆԸ ԱՆՑԿԱՑՆԵՆՔ ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾ ԵՎ ՍԵՂՄ ԺԱՄԿԵՏՈՒՄ

1. Գարնանացանի աշխատանքները ժամանակին և կազմակերպված անցկացնելը գյուղատնտեսության աշխատողների մարտական խնդիրն է։

2. Կոլտնտեսությունների, ՄՏ կայանների, սովխոզների տեխնիկական բազայի լրիվ և ճիշտ օգտագործումը գարնանացանի աշխատանքները հաջող ավարտելու լավագույն միջոցն է։

3. Սովետական առաջավոր ագրոբիոլոգիայի, գյուղատնտեսության առաջավորների փորձի լայն արմատավորումը կայուն, բարձր բերք ստանալու լավագույն երաշխիքն է։

4. Գարնանացանի աշխատանքներում բարձր կարգապահությունը, սահմանված նորմաների անթերի կատարումը յուրաքանչյուր կոլտնտեսականի պարտականությունն է։

5. Գարնանային աշխատանքների հաջող կազմակերպումը՝ մեր ռեսպուբլիկայի հացի պահանջը սեփական արտադրության հաշվին ապահովելու կարևորագույն պայմաններից է։

6. Կոլտնտեսային հարստության պաշտպանությունը յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտքն է։

*7. Գարնանացանը օրինակելիորեն անցկացնելու համար ծավալենք սոցիալիստական մրցությունը։*

*8. Ինչպես է մեր կոլտնտեսությունում կենսագործվում գարնանացանի գրաֆիկը։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Գ Ր. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ.— Հաշվետու զեկուցում Հայաստանի Կ(բ)Պ 15-րդ համագումարում: *Հայպետհրատ, առանձին բրոշյուրով։*

*ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պլենումի 1947 թ. փետրվարի 28-ի որոշումը՝* «Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին»: *Հայպետհրատ, առանձին բրոշյուրով։*

*ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1950 թվականի մայիսի 30-ի որոշումը՝* «Հայկական ՍՍՌ կոլխոզներում ցորենի և բամբակի արտադրությունն ավելացնելու, խոզերի և թռչունների գլխաքանակն ավելացնելու և հանրային անասնաբուծության մթերատվությունը բարձրացնելու միջոցառումների մասին»: *Հայպետհրատ, առանձին բրոշյուրով։*

Սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման ստալինյան ծրագիրը: *«Ս. Հ.», 1952 թ., փետրվարի 28-ի առաջնորդողը։*

Մեխանիզատորների մարտական խնդիրները: *«Ս. Հ.», 1952 թ., փետրվարի 20-ի առաջնորդողը։*



Լայնորեն արմատավորել գիտության նվաճումները և առաջավոր փորձը: *«Ս. Հ.», 1952 թ. փետրվարի 15-ի առաջնորդողը։*

## III

## ԱՎԵԼԻ ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵՆՔ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ 1952 ԹՎԱԿԱՆԻ ՊԼԱՆԸ ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ

*1. 1952 թվականի արտադրական պլանը ժամկետից շուտ կատարելը ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողների կարևորագույն խնդիրն է։*

*2. Յուրաքանչյուր բանվորի և բանվորուհու կողմից աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելը՝ արտադրական պլանը ժամկետից շուտ կատարելու հիմնական նախապայմանն է։*

*3. Արտադրանքի որակի բարձրացման և ինքնարժեքի իջեցման համար մղվող պայքարը՝ արդյունաբերության յուրաքանչյուր աշխատողի առաջնահերթ խընդիրն է։*

*4. Արտադրության նորարարների փորձի արմատավորումն ու կիրառումը, սոցիալիստական մրցության ծավալումը և ստախանովյան կոլեկտիվ աշխատանքը՝ կարևոր ուղիներ են արտադրական պլանը ժամկետից շուտ կատարելու համար։*

*5. Ինչպես է մեր բրիգադը, հերթափոխությունը,*

*ցեխը, ձեռնարկությունը կատարում 1952 թվականի արտադրանքի թողարկման պլանը։*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հայկական ՍՍՌ վիճակագրական Վարչության հաղորդագրությունը Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1951 թվականի պետական պլանի կատարման արդյունքների մասին»: *«Ս. Հ.», 1952 թ. փետրվարի 9։*

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության նետագա վերելքի համար: *«Ս. Հ.», 1952 թ. փետրվարի 10-ի առաջնորդողը։*

Լիովին, արդյունավետ օգտագործել արտադրության ռեզերվները: *«Ս. Հ.», 1952 թ. փետրվարի 19-ի առաջնորդողը։*

IV

## ԽՆԱՅՈՂՈՒԹՅԱՆ ՌԵԺԻՄԻ ՀԱՄԱՐ ՊԱՅՔԱՐԸ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԽՆԴԻՐՆ Է

*1. Խնայողության ռեժիմը արտապլանային սոցիալիստական կուտակումների կարևոր աղբյուրն է։*

*2. Արդյունաբերական ձեռնարկություններում ճիշտ կերպով օգտագործված սարքավորումը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը, գերազանց ո-*



*րակի արտադրանքի թողարկումը՝ խնայողության ռեժիմի կենսագործման անհրաժեշտ պայմաններն են։*

*3. Հումքը, նյութերը, էլեկտրաէներգիան և վառելիքը խստագույն խնայողությամբ օգտագործելը ամեն մի աշխատողի պարտականությունն է։*

*4. Արտադրական կորուստները իսպառ վերացնելու, տեխնոլոգիական կանոնները ճշտորեն կիրառելու համար տարվող պայքարը բոլոր բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների անմիջական պարտքն է։*

*5. Մեքենաները, գործիքները, դազգահները և սարքավորումները լավ վիճակում պահելը, նյութական միջոցների շռայլումների ու անտնտեսվարության դեմ պայքարելը՝ յուրաքանչյուրի պարտականությունն է։*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Մեծ նախաձեռնություն: *Հայպետհրատ, 1947 թ., էջ 19։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Սովետական Միության տնտեսական դրության և պարտիայի քաղաքականության մասին: *Երկեր, հատ. 8, էջ 158։*

Բոլշևիկյան պայքար ծավալել կորուստները կանխելու, հումքը տնտեսելու համար։ *«Ս. Հ.», 1952 թ. փետրվարի 8-ի առաջնորդողը։*

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.

Ն. Վ. ԳՈԳՈԼ.— «Երկերի ժողովածու»: *Հատոր 5-րդ, 496 էջ, գինը 15 ռուբ.։*

*Ս. ՄԱՐՇԱԿ.*— «Փոքրիկ պոեմ»: *16 էջ, գինը 60 կոպ.։*

*«ԲՈՒԼՂԱՐԱԿԱՆ ՊԱՏՄՎԱԾՔՆԵՐ»։ Գրքում զետեղված են Է. ՊԵԼԻՆԻ, Ս. ԴԱՍԿՈՒԼՈՎԻ, Կ. ԲԵԼԵՎԻ, Ս. ՆԻԿՈԼՈՎԻ և բուլղարական այլ նշանավոր գրողների պատմվածքները։ 111 էջ, գինը 3 ռ. 20 կոպ.։*

*Ս. ՄԻԽԱԼԿՈՎ.*— «Առակներ»: *54 էջ, գինը 1 ռ. 70 կոպ.։*

*ՆԱԶԻՄ ՀԻՔՄԵԹ.*— «Զոյա» *պոեմ։ 14 էջ, գինը 45 կոպ.։*

ԳԵՎՈՐԳ ՊԵՏՐՈՍՅԱՆ.— «Թիկունքում»: *317 էջ, գինը 9 ռ. 70 կոպ.։*

*Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ.*— «Մեր քաղաքում»: *Պոեմ։ 20 էջ, գինը 1 ռ. 20 կոպ.։*

---

Պատ. խմբագրի տեղակալ՝
Տ. ՎԱՐԺԱՊԵՏՅԱՆ

